Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ




№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՀԱՂԹԱՆԱԿՈՎ ԴՈՒՐՍ ԳԱՆՔ ԵՐԵՎԱՆ-ԿԻԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԻՑ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի դիրեկտիվները հաջողությամբ կատարելու համար մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը սոցիալիստական մրցության մեջ է մտել եղբայրական Ուկրաինայի մայրաքաղաք Կիևի հետ։*

*Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, Երևանի աշխատավորները պարտավորվել են՝ քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքի տարեկան պլանը բոլոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով կատարել մինչև այս տարվա դեկտեմբերի 20-ը և պլանից ավելի երկրին տալ 150 միլիոն ռուբլու արտադրանք։ Երևանցիները պարտավորվել են ընթացիկ տարում արտադրական ձեռնարկություններում արմատավորել 5000 ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկություն և դրանից ստանալ*







տարեկան 30 միլիոն ռուբլու խնայողություն, իսկ արտադրանքի ինքնարժեքի իջեցումից՝ 18 միլիոն ռուբլու գերպլանային խնայողություն։

Երևանի շինարարության ֆրոնտի աշխատողները պարտավորվել են քաղաքի կապիտալ շինարարության 1956 թվականի պլանը կատարել մինչև դեկտեմբերի 20-ը, շինարարության արժեքն իջեցնել 4 տոկոսով, պլանով նախատեսված 3 տոկոսի դիմաց, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 8 տոկոսով, շինարարության մեջ հողային աշխատանքների մեքենայացումը հասցնել 95 տոկոսի, շինանյութերի բեռնման և բեռնաթափման աշխատանքներինը՝ 60 տոկոսի և բետոնային աշխատանքներինը՝ 75 տոկոսի։

Երկաթուղայինները պարտավորվել են մինչև ՍՍՌՄ Կոնստիտուցիայի օրը՝ դեկտեմբերի 5-ը, կատարել բեռնման տարեկան պլանը, իսկ բեռնաթափման տարեկան պլանը կատարել 105 տոկոսով, կատարելագործել և բարելավել կայարանում կատարվող աշխատանքի տեխնիկական պրոցեսը, լայնորեն կիրառել տրանսպորտի նորարարների աշխատանքի դրական, առաջավոր մեթոդները։ Շոգեքարշի օրական միջին



վազքը նորմայի համեմատությամբ ավելացնել 3 կիլոմետրով, տեխնիկական արագությունը բարձրացնել ժամը կես կիլոմետրով, տնտեսել 450 տոննա պայմանական վառելանյութ։ Բացի դրանից մինչև դեկտեմբերի 10-ը պետք է ավարտվի և շահագործման հանձնվի տրամվայի 8 կիլոմետր երկարությամբ նոր ուղի, որը քաղաքի կենտրոնը միացնելու է Շահումյան և Կանազ ավանների հետ, ինչպես նաև շահագործման է հանձնվելու քաղաքի տրոլեյբուսային նոր պարկը։

Քաղաքային տնտեսության բարելավման բնագավառում երևանցիները պարտավորվել են լուրջ ձեռնարկումներ կատարել ջրմուղ-կոյուղու ցանցը և էլեկտրացանցը ընդարձակելու, քաղաքի բարեկարգման և սանիտարական վիճակը բարելավելու ուղղությամբ։ Մինչև տարվա վերջը ասֆալտապատվելու է 200 հազար քառակուսի մետր տարածություն և կանաչապատվելու է 61,5 հեկտար տարածություն։

Ժողովրդական կրթության և առողջապահության ֆրոնտի աշխատողները պարտավորություն են ստանձնել ժամանակին ավարտել դպրոցական շենքերի վերանորոգումը, դպրոցները ապահովել վառելիքով,

կազմակերպել նոր մանկապարտեզներ և մանկամսուրներ, կարգավորել դպրոցների սպորտային հրապարակները, սկսել № 2 մանկական ստադիոնի կառուցումը, դպրոցներում կազմակերպել ճաշարաններ։ Քաղաքի աշխատավորության բուժսպասարկումը բարելավելու նպատակով հիվանդանոցներում տեղերի թիվը ավելացնել 150 մահճակալով, շահագործման հանձնել Միկոյանի շրջանում կառուցվող նոր հիվանդանոցը։

Լուրջ պարտավորություններ են ստանձնել նաև մեր մրցակիցները՝ Կիևի աշխատավորները։ Նրանք պարտավորվել են արդյունաբերության այս տարվա պետական պլանը կատարել մինչև դեկտեմբերի 20-ը և երկրին պլանից ավելի տալ 600 միլիոն ռուբլու արտադրանք, գերակատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը 3 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը պլանի համեմատությամբ իջեցնել 1,5 տոկոսով, տալով 70 միլիոն ռուբլու գերպլանային խնայողություն։ Կիևցիները պարտավորություն են ստանձնել գյուտարարների և ռացիոնալիզատորների հետ կատարվող կազմակերպչական աշխատանքը բարելավելու և նրանց առաջարկնե-



րը արտադրության մեջ արմատավորելու միջոցով ստանալ 40 միլիոն ռուբլու խնայողություն, արտադրության նորարարների փորձը լայնորեն տարածելու նպատակով քաղաքի ձեռնարկություններում աշխատանքի առաջավոր մեթոդները սովորեցնել բանվորների առնվազն 20 տոկոսին և այլն։

Կիևը Սովետական Միության խոշորագույն և ամենաբարեկարգ քաղաքներից մեկն է։ Նա աշխատանքի բարձր արտադրողականության, պրոգրեսիվ մեթոդների կիրառման, ժամանակակից տեխնիկայի յուրացման մեծ փորձ ունի։

Երևանի աշխատավորությունը պատիվ է վիճակված մրցել Կիևի հետ, առավել ևս մեծ պարծանք է հաղթանակով դուրս գալ այդ մրցությունից։

Երկու մայրաքաղաքների մրցությունը մի նոր ավանդ է մտցնելու հայ և ուկրաինական ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության ամրապնդման գործում։ Երկու քաղաքների աշխատավորների, փաստորեն երկու ժողովուրդների, սոցիալիստական մրցությունը կօգնի ավելի մոտիկից ծանոթանալ միմյանց հետ, հնարավորություն կստեղծի կազմակերպել շավագույն փորձի փոխանակություն և միմ-

յանց նկատմամբ անկեղծ, եղբայրական օգնություն։

Երկու քաղաքների մրցությունը արդեն ընկրված է։ Երևանի աշխատավորները եռուն, աշխատանքային խանդավառ օրեր են ապրում։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները մասսայական-բացատրական լայն աշխատանք են կատարում բնակչության մեջ։ Նրանք պարզաբանում, յուրաքանչյուր աշխատավորի գիտակցությանն են հասցնում Երևան—Կիև սոցմրցման պայմանագրի կետերը և նրանց վերցրած պարտավորությունները, ոգևորում նրանց՝ մրցությունից հաղթանակով դուրս գալու, աշխատանքի մեջ եղած թերությունների ու խոչընդոտները արագորեն վերացնելու համար։

Մայրաքաղաքի գործարաններում, ֆաբրիկաներում, շինարարական հրապարակներում և բոլոր հիմնարկ-ձեռնարկություններում աշխատավորները ջանք չեն խնայում ստանձնած պարտավորությունները կատարելու համար։ Օրինակ, Երևանի կաշվի գործարանի առանձին ցեխեր ու բրիգադներ պատվով են կատարում ստանձնած պարտավորությունները։ Գործարանի միայն ներբանի ցեխը անցած 8 ամսվա իր արտա-



դրական պլանը կատարել ու գերակատարել է և տվել է 9 տոննայով ավելի կոշտ կաշի, քան նախորդ ամիսներին։ Այս գործարանում բոլոր բանվորները տիրապետում են 2—3 պրոֆեսիայի։ Կաշվի որակը բարելավելու հաշվին գործարանը երկրին տվել է ավելի քան 600 հազար ռուբլու խնայողություն։

Այսպիսի հաջողություններ են ձեռք բերել նաև մայրաքաղաքի մի շարք այլ արտադրական օբյեկտներ ու ձեռնարկություններ։

Ագիտատո՛ր, եղիր Երևան—Կիև սոցիալիստական մրցությունը կազմակերպողների առաջին շարքերում, միշտ վառ պահիր մրցության կրակը, ամեն մի աշխատողի շարունակ հիշեցրու նրա ստանձնած պարտավորությունը, սիստեմատիկ կերպով ամփոփիր ձեր գործարանում, ցեխում, բրիգադայում պլանների կատարման արդյունքները, օգնիր ավելի լավ օգտագործելու եղած ներքին հնարավորություններն ու ռեզերվները։

Ոգեշնչված պարտիայի XX համագումարի որոշումներով, Երևանի աշխատավորները կգործադրեն իրենց բոլոր ջանքերը ստանձնած պարտավորությունները ժամանակին և բարձր ցուցանիշներով կատարելու, սոցիալիստական մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

Ս. ԿՅՈՒՐՋՅԱՆ

*Արդեն երկրորդ տարին է, ինչ Սովետական Հայաստանի գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի դրական փորձն ու հաջողությունները լայնորեն ցուցադրվում են ռեսպուբլիկական գյուղատնտեսական ցուցահանդեսում: Գյուղատնտեսության առաջավորները գործնականում ցույց են տալիս, թե հացահատիկի, պտղի, բանջարեղենի և մյուս կուլտուրաների բերքատվության բարձրացման, ինչպես նաև անասնապահության մթերատվությունն ավելացնելու ուղղությամբ ինչպիսի լայն հնարավորություններ կան, որոնք դեռ լրիվ կերպով չեն օգտագործվում մեր կոլտնտեսությունների, սովխոզների և անասնապահական ֆերմաների կողմից:*

*Այս տարի ինչպես Համամիութենական, այնպես էլ ռեսպուբլիկական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից կոլտնտեսությունների, սովխոզների և կաթնա-անասնապահական ֆերմաների թիվը զգալի չափով ավելացել է: Ռեսպուբլիկական ցու-*



*ցահանդեսին մասնակցում են 62 կոլտնտեսություն, 9 սովխոզ, 49 կաթնաապրանքային ֆերմա, 21 պատանի բնասերների խմբակ, 2 ՄՏՏ կայան, ավելի քան 1400 առաջավոր, 220 կոլտնտեսային բրիգադա և օղակ, երեք գիտահետազոտական հիմնարկ, մի քանի տրեստ և այլն:*

*Ռեսպուբլիկական գյուղատնտեսական ցուցահանդեսում բազմաթիվ կոլտնտեսություններ իրենց ձեռք բերած հաջողություններով հիացմունք են պատճառում դիտողին: Ահա Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսությունը, որը 1955 թվականին 400 հեկտար տարածության վրա, յուրաքանչյուր հեկտարից ստացել է 36,5 ցենտներ բամբակ: Կոլտնտեսության ունեցած 150 կովերից յուրաքանչյուրի միջին կաթնատվությունը հասցրված է 2054 կիլոգրամի: Կոլտնտեսությունում բարձր է խաղողի, բանջարա-բոստանային կուլտուրաների, ինչպես նաև ցանովի խոտերի բերքատվությունը:*

*Դաշտավարության սենդում աչքի են ընկնում Շամշադինի շրջանի Մովսես գյուղի կոլտնտեսության ցուցանիշները: Կոլտնտեսությունը 127 հեկտար ծխախոտի պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից*

պետությանն է հանձնել 24,4 ցենտներ ընտիր ծխախոտ։ Աչքի ընկնող հաջողությունների է հասել Շահումյանի շրջանի Ներքին Ջարբախ գյուղի Մոլոտովի անվան կոլտնտեսությունը։ Կոլտնտեսությունում խաղողի միջին բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կազմում է 118 ցենտներ, պոմիդորինը՝ 307 ցենտներ։ Այստեղ յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը հասնում է 3288 կիլոգրամի։ Կոլտնտեսականները հաջողությամբ զբաղվում են նաև խոզաբուծությամբ և թռչնաբուծությամբ։ 1955 թվականին կոլտնտեսությունը իր լավ ցուցանիշների համար, Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի կողմից պարգևատրվեց մեկ բեռնատար ավտոմեքենայով, իսկ տասնյակ առաջավոր կոլտնտեսականներ պարգևատրվեցին մեծ ու փոքր արծաթյա մեդալներով և ստացան թանկարժեք նվերներ։

Շահումյանի շրջանի 18-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսությունում 1955 թվականին յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը եղել է 3687 կիլոգրամ։ Այս տարի նրանք յուրաքանչյուր կովից կստանան 4000 կիլոգրամ կաթ։

Շերամապահության ստենդում պատվա-



վոր տեղ են գրավել Մեղրու շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության անվանի շերամապահները։ Նրանք 1955 թվականին կերակրել են 192 տուփ գրենա և յուրաքանչյուր տուփից ստացել են 86,3 կիլոգրամ բոժոժ։ Կոլտնտեսությունը պետությանն է հանձնել 16,6 տոննա բարձր որակի բոժոժի կոկոն, որի դիմաց ստացել է 800.000 ռուբլի դրամ։ Այդ գումարը կազմում է կոլտնտեսության տարեկան ամբողջ եկամտի մոտ 25 տոկոսը։ Կոլտնտեսությունը զգալի հաջողություններ է ձեռք բերել նաև խաղողի բերքատվության բարձրացման գործում։ Յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 176 ցենտներ բերք։ Մանրակրկիտ հաշվումները ցույց են տալիս, որ կոլտնտեսությունը ամեն մի հեկտար հողից տարեկան ստացել է 6897 ռուբլու եկամուտ։

Ստեփանավանի շրջանի Սարատովկա գյուղի Խրուշչևի անվան կոլտնտեսության կաթնաանասնապահական ֆերման, որն ունի 237 կով, յուրաքանչյուր կովից ստացել է 2249 կիլոգրամ կաթ։ Այս փաստը շատ լավ օրինակ կարող է ծառայել այն կոլտնտեսությունների համար, որոնք կարծում են, թե կովերի միայն մի փոքր խմբից կարելի է շատ կաթ ստանալ։

Ստեփանավանի շրջանի Կալինինո գյուղի Ստալինի անվան կոլտնտեսությունը, որը ունի 884 կով, մինչև այժմ յուրաքանչյուր կովից ստացել է մոտ 1800 կիլոգրամ կաթ և մինչև հոկտեմբերի մեկը այդ թիվը կհասնի 2000-ի։

Աշխատելով առաջավոր կոլտնտեսությունների օրինակով, ընթացիկ տարում ռեսպուբլիկայի և Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսներին մասնակցելու իրավունք են ձեռք բերել մի շարք նոր կոլտնտեսություններ, օրինակ, Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի կոլտնտեսությունը, որը ծխախոտի 125 հեկտար ցանքատարածության ամեն մի հեկտարից հավաքել է 19,2 ցենտներ բերք։ Բասարգեչարի շրջանի Կարախիման գյուղի կոլտնտեսությունը 1955 թվականին 304 հեկտար աշնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 29,8 ցենտներ բերք։ Կոլտնտեսությունը ռեկորդային բերք է ստացել նաև ծխախոտի «Սամսուն» սորտի մշակությունից՝ 30 հեկտար տարածության վրա, յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 28,9 ցենտներ ծխախոտ։

Նույն շրջանի Նորակերտ գյուղի կոլտնտեսությունը 242 հեկտար գարնանացան



ցորենի ամեն մի հեկտարից հավաքել է 23,2 ցենտներ ցորեն, իսկ դաշտավարական բրիգադիր Հովհաննես Մկրտչյանը 80 հեկտար տարածության վրա, յուրաքանչյուր հեկտարից ստացել է 34 ցենտներ գարնան ցորեն։

Պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրության Բաղրամյանի և Շահումյանի անվան սովխոզները հարյուրավոր հեկտար տարածության վրա ստացել են կորիզավոր պտուղների բարձր բերք՝ հեկտարից 123 ցենտներ։ Շահումյանի անվան սովխոզի բրիգադիր Ա. Կարապետյանը 23 հեկտար խաղողի այգիների ամեն մի հեկտարից հավաքել է 149 ցենտներ խաղողի բերք։ Նույն սովխոզից օղակավարներ Խուդաթյանը և Ավագյանը խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացել են 187 ցենտներ բերք։

Ցուցահանդեսում հաճախորդները մեծ հետաքրքրությամբ են դիտում մեխանիզացիայի բաժինը։ Այստեղ ցուցադրված է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեքենայացման աճը։ 1940 թվականի համեմատությամբ 1955 թվականին տրակտորային պարկի կարողությունն աճել է 255,9 տոկոսով։ Կոլտնտեսություններում արդեն մեքե-

նայացված է ցրտահերկի 96,4 տոկոսը, աշնանացանի 63,8 տոկոսը և բերքահավաքի 57,6 տոկոսը։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Անասնապահական 303 ֆերմաներում մեքենայացված է կերի մշակումը, 36 ֆերմաներում՝ կիթը, 106 ֆերմաներում՝ կերի և գոմաղբի փոխադրումը։ Ռեսպուբլիկայում մոտ երկու միլիոն ոչխար խուզվում է էլեկտրական ագրեգատներով։

Ցուցահանդեսում հաջողությամբ պատկերված են նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Բազմաթիվ էքսպոնատներ, դիագրամաներ, թվեր ու փաստեր ցույց են տալիս, թե ինչպիսի հոյակապ հաջողություններ ունի մեր ռեսպուբլիկան ծանր արդյունաբերության, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության, լայն սպառման առարկաների արտադրության և հատկապես էլեկտրաարդյունաբերության ու էլեկտրիֆիկացման գործում։

Գյուղատնտեսական ցուցահանդեսը լավագույն միջոց է առաջավորների փորձն ուսումնասիրելու և այն կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելու համար։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

---

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ՈՒՂԻՈՎ

Ա. ԵՆԳՈՅԱՆ
Երևանի ծխախոտի ֆաբրիկայի
պարտկազմակերպության
բյուրոյի քարտուղար

Մեծ ու պատվավոր խնդիրներ են կանգնած մեր ֆաբրիկայի առջև։ Ֆաբրիկայի ծխախոտագործները կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները և վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ համագումարի Դիրեկտիվները, պայքարում են ավելացնել թողարկվող արտադրանքը և զգալիորեն բարելավել նրա որակը։

Ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականության բարձրացումը տեղի է ունենում ոչ միայն բանվորների նվիրված աշխատանքի շնորհիվ, այլև այն բանի շնորհիվ, որ մեզ մոտ մեծ ուշադրություն է նվիրվում տեխնիկական պրոգրեսին, նորարարությանը և գյուտարարությանը։ Խոսենք այդ մասին։

Առաջ պարկուճային ցեխում տեղի էր ու-

նենում աշխատանքի մի այսպիսի պրոցես. երեք բանվոր լցնող ցեխից ձեռքով բերում էին տարաները և դրանք լցնելուց հետո նորից հետ տանում դեպի նույն ցեխը: Այդ ցեխում դրվեց մի այսպես կոչված՝ տրանսպորտյոր-կոնվեյեր, որը կատարում է այդ նույն պրոցեսը առանց որևէ բանվորի մասնակցության: Այդ պրոցեսի մեքենայացման շնորհիվ տնտեսվեց 3 մարդու աշխատանք:

Այդ նույն ցեխում պարկուճի թուղթ կտրող մեքենայի վրա աշխատում էին չորս հոգի: Նրանք ձեռքով բարձրացնում էին թղթի ծանր փաթեթը ու այն հագցնում մեքենայի վրա և հետևում նրա աշխատանքին: Ֆաբրիկայի նորարարներին հաջողվեց այդ աշխատանքը նույնպես մեքենայացնել: Առաստաղի մոտ, երկաթ-բետոնե հեծաններին վրա դրվեց մի հատուկ սարքավորում, որը կոչվում է դելֆեր: Այժմ փաթեթի բարձրացումը և մեքենայի վրա հագցնելը կատարվում է այդ դելֆերի միջոցով:

Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ բավականաչափ աճեց աշխատանքի արտադրողականությունը: Ցեխը երկրին տարեկան տալիս է 3 միլիարդ 300 միլիոն ծխախոտի պարկուճ: Այս նշանակում է, որ ցեխում աշխատանքի արտադրողականության



ամեն մի մեկ տոկոս աճը երկրին տարեկան կտա լրացուցիչ 33 միլիոն ծխախոտի պարկուճ:

Տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը անշեղորեն աճում է ֆաբրիկայի նաև մյուս ցեխերում: Ահա դարսող ցեխը, որտեղ արդեն պատրաստի գլանակները դարսվում են տուփերի մեջ: Առաջներում այստեղ «Կազբեկ» ծխախոտի գլանակները տուփի մեջ դարսելու վրա աշխատում էին 15 բանվոր: Նրանք միասին մեկ աշխատանքային օրվա ընթացքում դարսում էին 300—400 հազար գլանակ (կամ 12—16 հազար տուփ): Այժմ այդ ցեխում դրվել է դարսող մեքենա, որը փոխարինելով 10 բանվորի, օրական դարսում է մինչև 800 հազար գլանակ: Աշխատանքի արտադրողականությունը այսպիսով բարձրացել է ավելի քան երկու անգամ:

Ծանր աշխատատար պրոցես էր համարվում «Կազբեկ» ծխախոտի տուփեր պատրաստելը: Այդտեղ աշխատում էին 42 բանվոր և ամբողջ աշխատանքային օրում պատրաստում էին հազիվ 16—17 հազար տուփ: Ցեխում դրվեց հատուկ սարքավորում ունեցող մի ավտոմատ մեքենա, որի վրա աշ-

խատում են միայն 7 բանվոր։ Այդ մեքենայի միջոցով օրվա ընթացքում արտադրվում է մոտ 30 հազար տուփ։ Այստեղ էլ տեղի է ունեցել աշխատող ուժի կրճատում և աշխատանքի արտադրողականության աճ՝ մոտ 2 անգամ։

Ջգտելով ամեն կերպ ավելացնել արտադրանքը և իջեցնել նրա ինքնարժեքը, ֆաբրիկայի շատ բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ հանդես են գալիս իրենց ռացիոնալիզատորական առաջարկություններով։ Բավական է ասել, որ միայն այս տարվա ընթացքում ֆաբրիկայում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից արվել է 43 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից արտադրության մեջ կիրառվել են 38 առաջարկություն։ Այդ առաջարկությունների կիրառման շնորհիվ ֆաբրիկայում տնտեսվել է 450 հազար ռուբլի։ Բնորոշ է այն, որ բոլոր ռացիոնալիզատորական առաջարկությունների մոտ 70 տոկոսը արվել է բանվորների կողմից։

Ինչպիսի՞ առաջարկություններ են եղել։ Սիգարետ լցնող մեքենայից պատրաստի սիգարետները իրար զուգահեռ ընթացող կոնվեյերների վրա բաշխվում էին մի հա-



տուկ հանգույցի միջոցով, որը կոչվում էր միտրայոզ։ Այս միտրայոզի միջից անցնելով, սիգարետները հաճախակի փչանում էին։ Սիգարետի ցեխի մեխանիկ Սարգիս Արզումանյանը առաջարկեց հանել այդ միտրայոզը և այնպիսի հնարավորություն ստեղծել, որպեսզի սիգարետները մեքենայից բաշխվեն անմիջապես կոնվեյերի վրա։ Այդպես էլ արեցին։ Փորձը ցույց տվեց, որ այդ առաջարկությունը միանգամայն տեղին էր և շահավետ։ Դրա շնորհիվ կանխվեցին սիգարետի կորուստները, իջավ արտադրանքի ինքնարժեքը։

Տեխնիկական պրոգրեսի, նորարարության և առաջավորների փորձի անշեղ կիրառման շնորհիվ ֆաբրիկան հասել է զգալի հաջողությունների։ 1956 թվականի ութ ամսվա արտադրական պլանը համախառն արտադրանքի գծով ֆաբրիկան կատարել է 104,7 տոկոսով, յուրաքանչյուր բանվորի աշխատանքի արտադրողականությունը աճել է 104 տոկոսով։ Այդ նշանակում է, որ 1956 թվականի ութ ամսում պլանից դուրս երկրին տրվել է 155 միլիոն հատ բարձրորակ գլանակ և սիգարետ։ 1956 թվականի առաջին կիսամյակում անտեսված է 18 տոննա ծխախոտ, 1,6 հազար քառակուսի մետր

պարկուճի թուղթ (բոբին), 65 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և այլ նյութեր։ Ինքնարժեքի իջեցման հետևանքով տնտեսվեց 265 հազար ռուբլի։

Առաջին եռամսյակի պլանը տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով կատարելու համար ֆաբրիկայի կոլեկտիվը արժանացել է Միութենական մրցանակի։

ՍՄԿՊ XX համագումարը արդյունաբերության աշխատողներին պարտավորեցրեց ամեն կերպ կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, է՛լ ավելի համարձակորեն արտադրության մեջ արմատավորել տեխնիկայի նվաճումները և առաջավորների փորձը։ Այս ուղղությամբ մենք դեռևս շատ անելիքներ ունենք։

Անխոնջ կերպով պայքարելով թերությունների վերացման համար, արտադրության մեջ անշեղորեն կիրառելով գիտության և տեխնիկայի նվաճումները, կրկնապատկելով մեր ուժերն ու եռանդը, մենք անընդհատ կբարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը և հարազատ երկրին կտանք ավելի շատ բարձրորակ արտադրանք։

---

# ԲԱՄԲԱԿԻ ԱՌԱՏ ԲԵՐՔԸ ԿՀԱՎԱՔԵՆՔ ԱՐԱԳ ՈՒ ԱՆԿՈՐՈՒՍՏ

Հ. ՄԵԼՈՅԱՆ

Վեդու շրջանի Ավշար գյուղի կոլտնտեսության բրիգադիր

Ջերմորեն արձագանքելով Կիրգիզիայի բամբակագործների մրցահրավերին, ավշարցիները ամեն ջանք գործ են դրել հեկտարից 23 ցենտներ բամբակի հումք ստանալու համար։

Իմ ղեկավարած № 2 բրիգադան երկար տարիներ է, ինչ զբաղվում է բամբակագործությամբ։ Բամբակը՝ դա մեր ամենից շատ սիրած կուլտուրան է։ Բազմամյա հարուստ փորձով զինված, մենք տարեցտարի բարձրացնում ենք նրա բերքատվությունը և պետք է ասել, որ մեր թափած աշխատանքը իզուր չի անցնում։

Բրիգադան մշակում է 52 հեկտար բամբակենի։ Տարիների փորձից լավ գիտենք, որ բարձր բերքի ստացումը, առաջին հեր-

թին կախված է լավ ցանքից, ցանքի լավ մշակությունից: Դրա համար էլ դեռ վաղ գարնանից եռանդով գործի ենք անցել, լավ ենք նախապատրաստել հողը, ցրտահերկից բացի, գարնանը՝ հողը նախացանքային մշակության ենք ենթարկել, հարթեցրել ենք, նրա վրա որակով կուլտիվացիա կատարել: Դրա միջոցով ոչնչացրել ենք բոլոր տեսակի մոլախոտերի մնացորդները: Անցած տարվա համեմատությամբ, ավելի արագ ու որակով ենք կատարել ցանքը. այն ավարտել ենք ընդամենը 4 աշխատանքային օրում: Նշենք և այն, որ մեզ մոտ ցանքը ամբողջովին կատարվում է մեքենայով, նեղշար եղանակով:

Մեր բամբակագործները սեփական փորձով արդեն համոզվել են, թե բերքատվության բարձրացման տեսակետից որքան մեծ նշանակություն ունի ցանքի լիարժեքությունը: Դրա համար այդ գործին բացառիկ նշանակություն ենք տալիս: Ցանքից մի քանի օր հետո, երբ արդեն նշմարվում էին բամբակենու շարքերը, լրացրինք բաց մնացած բոլոր տարածությունները: Նոսրացումների ընթացքում հետևել ենք, որ խստիվ պահպանվեն միջբույսային հեռավորությունները, նոսրացումը, իբրև կարևոր աշ-



խատանք, կատարել ենք բացառապես փորձված բամբակագործների միջոցով: Դրա շնորհիվ հասել ենք այն բանին, որ այժմ բամբակի բոլոր տարածությունները լիարժեք են, յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովված է առնվազն 100 հազար բույս:

Բամբակենու բոլոր մշակությունները կատարել ենք ժամանակին ու բարձր որակով: Կոլտնտեսականների և մեխանիզատորների համատեղ աշխատանքով պլանտացիաների վրա 5—6 մշակություն է կատարվել: Կուլտիվացիան, փխրեցումը, ինչպես նաև շարքերի ակոսահանումը կատարվել է հաջորդականությամբ: Այդ գործում լրիվ կիրառվել են գոյություն ունեցող ագրոկանոնները: Դրա շնորհիվ է, որ մեր դաշտերը, ամբողջ վեգետացիայի ընթացքում, զերծ են եղել մոլախոտերից և գտնվել են փուխր վիճակում:

Բամբակենու ոռոգումը շատ կարևոր աշխատանք է: Մենք մեր փորձից լավ գիտենք, որ, երբ ուշացվում է ոռոգումը, այն մեծ չափով ազդում է բերքի վրա, տեղի է ունենում ծաղկավիժում: Դրա համար էլ ոռոգումը կատարում ենք սահմանված ժամկետներում, փորձված ջրվորների միջոցով: Մենք խուսափում ենք նաև բամբակենին

շատ ջրելուց. այդ և բույսի աճման համար օգտակար չէ։ Ընթացիկ տարում ոռոգումը կատարել ենք ելնելով հողի ու բույսերի պահանջից։ Լիովին կիրառում ենք ոռոգման ակոսային եղանակը, ակոսներում ջուրը բաց ենք թողնում դանդաղ հոսանքով, այնպես, որ հողը չկեղևակալի, բամբակենու բոլոր բույսերը հավասարապես օգտվեն խոնավությունից։

Ընթացիկ տարում ավելի մեծ ուշադրություն ենք դարձրել բամբակենու բուժման գործին։ Աճեցրած բերքը կարող է մի քանի օրվա ընթացքում ոչնչանալ, եթե անտեսվում կամ ձգձգվում է վնասատուների դեմ պայքարը։ Այդ մենք լավ գիտենք տարիների փորձից։ Ընթացիկ տարում «չոռ»-ի դեմ 5—6 սրսկում ենք կատարել, այն էլ մեքենաներով, կոմբինացված եղանակով։ Բացի ՄՏՍ կայանի տրամադրած մեքենաներից, լրիվ օգտագործել ենք նաև մեր ունեցած սրսկիչներն ու փոշոտիչները, նրանց միջոցով սրսկել ու փոշոտել ենք «չոռ»-ով վարակված բոլոր օջախները, հիմնովին կանխել վնասատուների ու հիվանդությունների տարածումը։ Բամբակենու դաշտերը լիովին առողջ են, աճեցրած առատ բերքը անկորուստ պահպանվել ու հասունացել է։



Ընթացիկ տարում, կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով, մեզ մոտ նույնպես բամբակենու վեգետացիան բավականին ուշացավ։ Դրա համար էլ, հիմնվելով գիտության ճշգրիտ տվյալների վրա, մի շարք միջոցառումներ կիրառեցինք՝ բամբակենու բերքի հասունացումն արագացնելու համար։ Ամենից առաջ, օգոստոս ամսում՝ բույսերի վեգետացիայի ու ճյուղավորման ուժեղ շրջանում կատարեցինք խոր ծերատում, դրանով իսկ դանդաղեցնելով բույսի աճը։ Ժամանակից դեռ մի քիչ էլ շուտ դադարեցրինք նաև ոռոգումը։ Այս տարի սեպտեմբերի 20-ին համատարած կերպով բոլոր պլանտացիաները ինքնաթիռով փոշոտեցինք։ Այդ արեցինք նրա համար, որ բույսերի տերևները լրիվ թափվեն, տաքության ավելի արագ թափանցման միջոցով արագանա կնգուղների հասունացումը։ Կիրառված այս ագրոմիջոցառումները բավականին նպաստում են բերքի արագ հասունացմանը։ Չնայած անբարենպաստ եղանակներին, այնուամենայնիվ մեզ մոտ բամբակը ավելի արագ է հասունանում։

Թևակոխել ենք աշխատանքի ամենավճռական շրջանը։ Սկսել ենք բամբակի բերքահավաքը։ Ինչպես հայտնի է, այս տարի

բամբակի բերքահավաքը մոտավորապես 20 օր ուշ է սկսվում, դրա համար էլ ունեցած բոլոր միջոցները մոբիլիզացրել ենք այն հաշվով, որ կարողանանք ավելի արագ ու անկորուստ հավաքել մեր աճեցրած առատ բերքը։

Ինչպես ամբողջ կոլտնտեսությունում, այնպես էլ մեր բրիգադայում, նախքան բերքահավաք սկսելը լրիվ ավարտել ենք նախապատրաստական բոլոր տեսակի աշխատանքները։ Բամբակենու դաշտերը ամբողջովին մաքրել ենք կպչուկներից, որոնք մեծ չափերով դանդաղեցնում են բերքահավաքը, բացի այդ, գցում են բամբակի որակը։ Պլանտացիաներում կատարել ենք նաև վերջնական քոլքաշ։ Բամբակ հավաքող բոլոր կոլտնտեսականները ապահովված են երկգրպանի երկուական գոգնոցներով, ըստացել ենք անհրաժեշտ քանակությամբ բարդաններ, թել ու ասեղ։ Մեր բրիգադան ունի երկու ֆուրգոն, որով փոխադրվում է օրվա հավաքված բամբակը։ Բարեկարգ են հանդամիջյան ճանապարհներն ու կամուրջները, ունենք կշեռք՝ դաշտում հավաքվող բամբակը կշռելու ու արագ կերպով մթերակայան փոխադրելու համար։

Բերքահավաքը ուշ սկսելու պատճառով



բամբակի չորացման ժամանակ անշուշտ դժվարություններ կլինեն։ Դրա համար էլ մենք լրիվ կարգի ենք բերել բամբակի չորանոցը, բացի այդ, ձեռնարկել ենք եղեգնից պատրաստած չորանոցների օգտագործմանը։ Մենք օգտագործում ենք հնարավոր բոլոր միջոցները, որպեսզի անհրաժեշտության դեպքում ավելի արագ չորացնենք խոնավ բամբակը և այն առանց որևէ ձգձգումների հանձնենք մթերակայան։

Առավոտից մինչև երեկո չի դադարում բամբակագործների խանդավառ աշխատանքը։ Ստանձնած պարտավորությունը գործի վերածելու համար պայքարում է յուրաքանչյուր կոլտնտեսական։ Դեռ նախքան բերքահավաքի դուրս գալը, մեր կոլտնտեսության ընդհանուր ժողովում քննել ենք բամբակի բերքահավաքի հարցը և միահամուռ կերպով որոշել սեպտեմբեր ամսում կատարել բամբակի հանձնման տարեկան պլանի 30, հոկտեմբերին՝ 55 և նոյեմբերին՝ 15 տոկոսը։

Մեր բրիգադայի բամբակագործները ավելին են պարտավորվել։ Հաշվի առնելով ունեցած հնարավորությունները, մենք որոշել ենք բամբակի հումքի հանձնման տարեկան պլանը հիմնականում կատարել հոկ-

տեմբեր ամսում։ Այդ նշանաբանով էլ այժմ եռանդուն աշխատանք է կատարվում։ Բամբակագործները խոսքից գործի են անցնում։ Ամբողջ կոլտնտեսությունում գովասանքով են խոսում Վ. Գևորգյանի, Հ. Մարուքյանի, Օ. Խաչատրյանի, Ա. Իմանովայի և մյուսների մասին, որոնք անցած տարի օրական հավաքել են 150—200 կիլոգրամ բամբակ և դրա համար մի քանի անգամ պարգևատրվել Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի կողմից։ Այդ կոլտնտեսականները, այս տարի նույնպես, չնայած նոր են սկսել բերքահավաքի աշխատանքները, աչքի են ընկնում բարձր արտադրողականությամբ։ Բրիգադան մթերակայան է հանձնել բամբակի առաջին տասնյակ տոննաները։

Մեր բրիգադան, որը պարտավորվել է ամեն մի հեկտարից ստանալ 25 ցենտներ բամբակ, անկասկած, պատվով կկատարի իր խոսքը։ Մենք այս տարի երկրին կտանք 130 տոննա բամբակի բարձրորակ հումք և հոկտեմբեր ամսի վերջում կկատարենք այդ առաջադրանքը։ Այդ մեր բրիգադայի բոլոր բամբակագործների հաստատ խոսքն է։

---

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

## ԽՈԶԵՐԻ ԲՏՈՒՄԸ ՀԱՐԹԱԿՆԵՐՈՒՄ

Պարտիայի XX համագումարը ընդգծելով կոլտնտեսություններում և սովխոզներում անասնաբուծությունն ամեն կերպ զարգացնելու անհրաժեշտությունը, խնդիր դրեց՝ «մսի արտադրությունն ավելացնել ամենից առաջ խոզաբուծության հաշվին, որպես առավել վաղահաս անասնապահական ճյուղի. խոզի մսի տեսակարար կշիռը երկրում մսի արտադրության ընդհանուր ծավալի մեջ հասցնել 50 տոկոսի, դրա համար օգտագործելով խոզերի մսատու և բեկոնային բուծման առավելությունները»։

Խոզաբուծության զարգացման և հատկապես խոզերի բտումը արդյունավետ կազմակերպելու ասպարեզում ուսանելի հաջողություններ են հասել Ուկրաինական ՍՍՌ Վիննիցայի մարզի Սուրիժևսկի ՄՏ կայանի սպասարկած կոլտնտեսությունները։ Ահա թե ինչ է պատմում այդ մասին Սուրիժևսկի ՄՏ կայանի դիրեկտոր ընկ. Վ. Դեխտյարը։

Խոզի մսի արտադրությունն ավելացնելու գործում կոլտնտեսությունների ձեռք բերած հաջողություններին նպաստեցին մերուներն ինտենսիվ օգտագործելու, խոզերի պահպանումը բարելավելու և, գլխավորապես, կերի բազան ամրապնդելու ուղղությամբ կիրառված միջոցառումները: Բոլոր կոլտնտեսություններում մտցվել և յուրացվել են կերային ցանքաշրջանառություններ, կազմակերպված են կերի արտադրության կայուն բրիգադաներ: Այդ, ինչպես նաև դաշտային բրիգադաները, տրակտորային բրիգադաների հետ համագործակցած, աճեցնում են անհրաժեշտ քանակությամբ զանազան կերեր: 1955—1956 թվականի ձմռանը յուրաքանչյուր մերունի համար պատրաստվել էր ավելի քան 9 տոննա եգիպտացորենի կոնսերվացված կողր: Բոլոր կոլտնտեսություններում արմատավորվում է խոզերի միջցեղային տրամախաչումը: Խոզերի բտումը կատարում են հատկապես դրա համար կազմակերպված բրիգադաները:

Խոզի մսի արտադրությունն ավելացնելու միջոցառումները նշելիս՝ կոլտնտեսությունները դեմ էին առնում դժվարությունների, որոնք կապված էին բտվող գլխաքանակի



տեղավորման հետ: Այդ խնդրի հաջող լուծմանը օգնեց ՄՏ կայանի գոտու Ստալինի անվան կոլտնտեսության փորձը, որտեղ խոզերի բտումը կատարվում էր դրա համար հատկապես սարքավորված հարթակում:

Ստալինի անվան կոլտնտեսության փորձը ցույց տվեց, որ Վիննիցայի շրջանի պայմաններում խոզերին այդպիսի հարթակներում կարելի է բտել ամբողջ տարին: Հարթակի պատրաստումը կոլտնտեսության վրա նստում է 20—27 հազար ռուբլի, կամ 8—10 անգամ էժան, քան նստում է տիպային խոզանոցի կառուցումը: Բացի դրանից, հարթակը կարելի է պատրաստել 3—4 շաբաթվա ընթացքում:

Ստալինի անվան կոլտնտեսության փորձով համոզվելով այն շահավետության մեջ, որ ունի խոզերի բտումը հարթակներում, արդեն 1955 թվականի սկզբին ՄՏ կայանի սպասարկած բոլոր 12 կոլտնտեսություններն էլ իրենց մոտ պատրաստեցին այդպիսի հարթակներ:

Բտման հարթակը կամ կիսաբաց տիպի խոզանոցը, ինչպես այլ կերպ անվանում են այն, ունի խոզերի բտման և զբոսանքի հարթակ, և իր կառուցվածքով պարզ է:

Ելնելով բտվող խոզերի գլխաքանակից՝

կիսաբաց տիպի խոզանոցը բաժանվում է 2—3 կամ 4 սեկցիայի։ Այդ սեկցիաների հատակը, որպես կանոն, տախտակամած է։ Յուրաքանչյուր սեկցիայի դիմաց պատրաստվում է ցանկապատված, բաց հարթակ, որի հատակը բետոնապատվում է, ասֆալտապատվում կամ տախտակամածվում։

Բաման հարթակը պատրաստվում է խոզաբուծական ֆերմայի տերիտորիայում, կերի ցեխին մոտիկ։

Կիսաբաց խոզանոցի հիմքը պատրաստվում է որմնաքարից՝ շաղախով. հետևի և կողքերի պատերը շարվում են աղյուսով (1,5 աղյուսի հաստությամբ), իսկ ճակատը, հարթակի կողմից, կարկասային պատն է՝ բետոնից պատրաստված հենասարքի վրա կանգնեցված փայտե սյուներով։ Կարկասապատի վերևի մասը ծածկվում է կարկասին ուղղաձիգ ամրացված տախտակներով, իսկ ներքևի մասը ամռանը բաց է մնում։ Ձմռան շրջանում առջևի պատի բաց մասը ծածկվում է առանձին փայտե ծածկոցներով, ընդորում յուրաքանչյուր սեկցիայի համար թողնելով դռներ և լուսամուտներ։

Ինչպես ցույց տվեց Լենինի անվան կոլ-



տնտեսությունում կատարված փորձը, բաման հարթակներում պահվող խոզերի օրական միջին քաշաճը 100—120 գրամով բարձր է լինում, քան խոզանոցում պահվող խոզերինը։ Դա բացատրվում է նրանով, որ խոզերը հարթակներում ավելի լավ են ուտում կերերը և շարունակ զբոսնում են։

Բաման հարթակներում պահվող խոզերի սպասարկման համար կրկնակի չափով քիչ աշխատանք է ծախսվում, քան տիպային խոզանոցներում։ Օրինակ, Լենինի անվան կոլտնտեսությունում խոզերին, որոնց ընդհանուր գլխաքանակն է 560, կերակրում են 150-ական քառակուսի մետրանոց չորս սեկցիայից բաղկացած հարթակում։ Տիպային խոզանոցներում այդքան խոզ պահելու համար անհրաժեշտ է ունենալ 16 մարդ, մինչդեռ Լենինի անվան կոլտնտեսությունում 560 խոզերին հարթակում սպասարկում է միայն 8 մարդ։

Զգալի կերպով հեշտանում է բաման հարթակներում պահվող խոզերի սպասարկման աշխատանքը։ Օրինակ՝ հարթակի վրայից գոմաղբը ամռանը հեշտությամբ մաքրում են ջրով, իսկ ձմռանը՝ հատուկ թիերով։ Մեծ խմբերով պահվող խոզերին

*կեր տալը ավելի հեշտ ու արագ է կատարվում, քան մանր խմբերով (5—8 խոզ) պահվող խոզերին։*

*Երբեմն հարցնում են, թե ձմռան շրջանում իրենց ինչպես են զգում բաց հարթակներում պահվող խոզերը։ Անցյալ տարվա ցրտերը և հատկապես այս տարվա հունվար-փետրվարի ցրտերը, որոնք հասնում էին մինուս 30 աստիճանի, բացասական ազդեցություն չունեցան հարթակում գտնվող խոզերի վրա։ 4 ամսականից բարձր խոզերը լավ էին զգում իրենց, նույնիսկ կերակրումների միջև ընկած ժամանակամիջոցում հաճույքով դուրս էին գալիս զբոսնելու և դեկտեմբերի համեմատությամբ, երբ ջերմաստիճանը տատանվում էր զերո աստիճանի սահմաններում, չպակասացրին իրենց քաշաճը։*

*Կոլտնտեսությունները նորանոր միջոցներ են որոնում խոզի մսի արտադրությունն ավելացնելու և արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա աշխատանքի ու միջոցների ծախսը իջեցնելու համար, ուսումնասիրում են կերերն ավելի ռացիոնալ օգտագործելու եղանակները։*

*Այսպես, օրինակ, ի տարբերություն անցյալ տարիների, կոլտնտեսությունների մեծ*



*մասը դեռ 1955 թվականի աշնանից սկսեց*
*խոզերին կերակրել հում կերերով։ Այժմ կե-*
*րի ճակնդեղը, գազարը այլևս չեն եփում,*
*խոտը և կալամնացորդները չեն խաշում,*
*այլ լավ մանրացնում և խոզերին են տալիս*
*մյուս կերերի հետ խառնելով։ Այդ միջոցառումը չնվազեցրեց բտվող խոզերի քաշաճը և դրա հետ միաժամանակ հնարավորություն տվեց մի քանի անգամ կրճատելու վառելիքի ծախսումը և ազատելու այն մարդկանց, որոնք զբաղված էին միայն կերեր եփելով ու խաշելով։*

*Հարթակներում խոզերի բտման փորձը ցույց տվեց, որ խոզերին տրվող կերերը ամենից ավելի լավ է խոնավացնել։ Հում կեր է տրվում նաև մայրական գլխաքանակին, իսկ խոճկորների կերը տրվում է խաշելուց հետո։*

*Ստրիժևսկի ՄՏ կայանի կողմից սպասարկվող բոլոր կոլտնտեսությունները անցել են խոզերի մսային բտման և պարտավորություն են ստանձնել 1956 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողի դիմաց ստանալ 45 ցենտներ խոզի միս։ Այդ պարտավորությունը կատարվում է հաջողությամբ։*

# ՑԵՅԼՈՆ

## Ի. ՄԱՅՈՐՈՎ

(*Տեղեկանք*)

*Ցեյլոնը փոքր երկիր է, որը գտնվում է Հնդկական օվկիանոսի նույնանուն կղզու վրա, Ինդոստան թերակղզու հարավ-արևելյան ափերի մոտ։ Ցեյլոնի բնակչությունը ավելի քան 8 միլիոն մարդ է։ Կղզու բնակիչների մեծ մասը (մոտ 70 տոկոսը) կազմում են սինգալեզները։ Իր մեծ հարևան Հնդկաստանից միայն մի քանի տասնյակ կիլոմետրեր են բաժանում Ցեյլոնը, այդ պատճառով էլ նրա բնակիչների մեջ շատ կան տամիլներ, որոնք ծագումով Հարավային Հնդկաստանից են։ Ցեյլոնի գլխավոր քաղաքը Կոլոմբոն է։*

*Ցեյլոնը հին և հարուստ կուլտուրայի երկիր է։ Ցեյլոնը ոչ միայն աշխարհագրականորեն, այլև շատ դարեր ի վեր և պատմականորեն կապված է Հնդկաստանի հարավային մարդկերի հետ, դրա համար էլ նրա*






*կուլտուրան շատ է նման այդ մարդկերի կուլտուրային։*

*Հաջող կերպով տեղավորված լինելով ծո-*

վային ուղիների խաչաձևման վայրում և բնությունից առատորեն օժտված լինելով, Ցեյլոնը դեռ վաղուց գրավում էր եվրոպական գաղութարարների ուշադրությունը։ Դեռևս՝ 1505 թվականին կղզում ափ իջան առաջին եվրոպացիները. դրանք պորտուգալացիներն էին։ Բայց 1658 թվականին նրանց դուրս մղեցին հոլանդացիները, իսկ 18-րդ դարում կղզին գրավեցին անգլիացիները, որոնք այդ ժամանակ արդեն ամրապնդվել էին Հնդկաստանում։ Ցեյլոնի ժողովուրդը երբեք չհաշտվեց գաղութային վիճակի հետ, նա չդադարեց իր անկախության համար պայքարելուց և 1948 թվականին Անգլիան ստիպված եղավ Ցեյլոնին տալ դոմինիոնի ստատուս։

Գաղութային զարգացման բազմադարյան ուղին չէր կարող իր կնիքը չդնել Ցեյլոնի էկոնոմիկայի վրա։ Գաղութները հումքի աղբյուրի վերածելու տրադիցիոն քաղաքականությանը համապատասխան, կապիտալիստները կղզու վրա գցում էին պլանտացիաներ, որոնց հիմնական պրոֆիլը դարձան կաուչուկը, թեյը և կոկոսի յուղը։ Այդ արտադրանքը չէր կարող կլանվել տեղական շուկայի կողմից և համարյա ամբողջությամբ տարվում էր արտասահման։ Դրու-



թյունը սաստկանում էր նաև նրանով, որ պլանտացիաների տակ աստիճանաբար ընդգրկվեցին երկրի լավագույն ցանքատարածությունները, դուրս մղելով բրնձի ցանքերը, որը հանդիսանում է կղզու բնակչության հիմնական սննդամթերքը։ Ցեյլոնը ստիպված էր ներմուծել երկրում պակասող սննդամթերքը։

Այդպիսի արտաքին առևտրի պատճառով Ցեյլոնի էկոնոմիկան ստացավ միակողմանի բնույթ։ Միայն ակտիվ արտաքին առևտրական բալանսը կարող էր էկոնոմիկային տալ բարգավաճում, իսկ երկրին՝ պարենամթերք։ Դա պահանջում էր ամեն կերպ ընդլայնել արտաքին առևտրական կապերը, առանձնապես, դեմոկրատական ճագերի երկրների հետ։ Սակայն երկար ժամանակ իշխանության գլուխ կանգնած Միացյալ ազգային պարտիայի կառավարությունը վարում էր միակողմանի կապերի քաղաքականություն՝ գաղութարարությունը պաշտպանող պետությունների հետ։

Տակավին մինչև վերջերս ցեյլոնյան կաուչուկի հիմնական գնորդը Ամերիկայի Միացյալ Նահանգներն էին, բայց մոտավորապես հինգ տարի առաջ ամերիկացիները կամայականորեն իջեցրին կաուչուկի վա-

ճառքի գները, իսկ հետագայում նրանք բոլորովին դադարեցին կաուչուկ գնել, որը Ցեյլոնի էկոնոմիկան հասցրեց ֆինանսական փլուզման: Երկրում իջեցվեցին բնակչության տրվող բրնձի նորմաները, բարձրացան գները, ռեալ աշխատավարձն ընկավ:

1952 թվականին կառավարությունը ըստիպված էր հրաժարվել արտաքին առևտրի մեջ իր միակողմանի օրիենտացիայից և կնքել Ցեյլոնի համար խիստ անհրաժեշտ առևտրական համաձայնագիր Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ: Հինգ տարվա համար նախատեսված այդ համաձայնագրով Ցեյլոնի կաուչուկը փոխանակվում էր չինական բրնձով այնպիսի գներով, որոնք գերազանցում էին կաուչուկի այն ժամանակվա համաշխարհային գները: Այդ համաձայնագրի շնորհիվ Ցեյլոնը միայն 1954—1955 թ. թ. ընթացքում ստացավ 117 միլիոն ռուպիի շահույթ:

ՉԺՌ-ի հետ առևտրական համաձայնագիրը Ցեյլոնին օգնեց իր էկոնոմիկան ֆինանսական ճգնաժամից դուրս բերելու համար: Մինչդեռ կառավարությունը, որի գլուխ 1953 թվականին կանգնեց Ջոն Կոտալավալան, չնայած Ցեյլոնի լայն հասարակայնության պահանջներին, չէր ձգտում հետագա-



յում ևս ընդլայնել կապերը և գործարար համագործակցությունը դեմոկրատական երկրների հետ: Նա առաջվա պես հրաժարվում էր դիվանագիտական հարաբերություններ հաստատել Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ և ամեն կերպ ձգտում էր ավելացնել օտարերկրյա կապիտալ ներդրումները երկրում:

Կառավարության քաղաքականությունը հակառակ էր գնում Ցեյլոնի ժողովրդի ազգային շահերին և ձգտումներին: Ինչպես հայտնի է, այդ ձգտումը հատկապես ցայտուն կերպով դրսևորվեց Ասիայի ու Աֆրիկայի երկրների Բանդունգի կոնֆերանսում, որի աշխատանքներին մասնակցում էր նաև Ցեյլոնը: Սակայն Ցեյլոնի կառավարությունը միայն խոսքով հավատարիմ լինելով Բանդունգի սկզբունքներին, գործով շարունակում էր իր հակաժողովրդական քաղաքականությունը, որը օգտակար և հարմար էր գաղութարարներին:

Երկրում ծայր էր առնում հզոր բողոքի շարժումը: 1956 թվականի ապրիլի ընտրություններին Կոտալավալայի կառավարության դեմ հանդես եկավ ժողովրդական միացյալ ճակատը («Մախաջանա եկսատ

պերամունա») օպոզիցիայի լիդեր, Ցեյլոնի հայտնի քաղաքական գործիչ Սոլոմոն Բանդարանաիկեի գլխավորությամբ։ Միացյալ ճակատի ծրագիրը պահանջում էր Ցեյլոնի չեզոքություն, Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ դիվանագիտական հարաբերությունների հաստատում, օտարերկրյա կապիտալին պատկանող պլանտացիաների ազգայնացում, Ցեյլոնի անգլիական ռազմական բազաների լիկվիդացում և Ցեյլոնի հռչակումը ռեսպուբլիկա։ Այդ ծրագիրը լիակատար հաղթանակի հասցրեց երկրի առաջադիմական ուժերին։ Բավական է ասել, որ իշխանության գլուխ կանգնած Միացյալ ազգային պարտիան ներկայացուցիչների պալատի 95 ընտրական տեղերից ստացավ միայն 8 դեպուտատական մանդատ։ Ցեյլոնի ընտրություններին «Բանդունգի ոգու» հաղթանակը գտավ ամբողջ աշխարհի ազատասեր և դեմոկրատական ուժերի ջերմ հավանությունը։

Իշխանության գլուխ անցնելու առաջին իսկ օրերից նոր կառավարությունը ի դեմս իր պրեմյեր-մինիստր Բանդարանաիկեի, հայտարարեց, որ Ցեյլոնում «տեղ չկա անգլիական կամ որևէ այլ բազաների հա-



մար», իսկ 1956 թվականի հուլիսի 6-ին Բանդարանաիկեի բանակցությունների հետևանքով Լոնդոնում ստորագրվեց համաձայնագիր Տրինկոմալիում անգլիական ռազմածովային բազայի և Նեգոմբոյում ռազմա-օդային բազայի լիկվիդացման մասին։

Ազգային անկախության և բոլոր երկրների հետ խաղաղ ու գործարար համագործակցության ուղին բռնած Ցեյլոնի ձայնը միջազգային թատերաբեմում այժմ բոլորովին այլ կերպ է հնչում, գտնելով ամբողջ աշխարհի խաղաղասեր և դեմոկրատական ուժերի համակրանքն ու պաշտպանությունը։ Ցեյլոնի նոր կառավարության հռչակած չեզոքության, Բաղդադի պակտի և ՍԵԱՏՈ-ի տիպի ագրեսիվ դաշինքների դատապարտման քաղաքականությունը հանդիսանում է խաղաղ գոյակցության քաղաքականության և Բանդունգի սկզբունքների ևս մեկ հաղթանակը։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՄԲԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 39-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ*, 1956։

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին, *Հայպետհրատ*, 1956։

Սկսվեց Երևան և Կիև քաղաքների սոցիալիստական մրցությունը, *նյութեր ստանձնած պարտավորությունների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 6-ի համարում։*

## *2. ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը՝ ՍՄԿՊ Կենտրոնական



Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ*, 1956։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և Արհեստակցական միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդի որոշումը ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը բարձրացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 9-ի համարում։*

Ժողովրդի բարօրության նկատմամբ հոգատարության նոր արտահայտություն, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 11-ի համարում։*

## *3. ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 62—67։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան Կենտրոնական ստադիոնում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 1-ի համարում։*

## *4. ԱՎԵԼԻ ՇԱՏ ԲԱՄԲԱԿ ՄԵՐ ԵՐԿՐԻՆ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստան—Կիրգիզիա սոցիալիստական մրցությունը, *մրցության առաջավորների առանձին հոդ-*

վածներ, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 19-ի համարում։

Ողջույն մեր մրցակիցներին, «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 19-ի առաջնորդողը։

Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 8-րդ համարում, էջ 57—58։

5. ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԿՈՒՇՏ ԵՎ ՏԱՔ ՁՄԵՌՈՒՄԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 88—94։

Հանրային նոտը ապահովել կերով, «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 6-ի առաջնորդողը։

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Կերի կայուն բազան անասնաբուծության վերելքի գլխավոր պայմանն է, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 11-ի համարում։

6. ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԿԱՐՏՈՖԻԼԻ ԵՎ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու մասին— ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956



թվականի հունվարի 30-ի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 2-ի համարում։

Բրյանսկի մարզի կոլտնտեսությունների, կոլտնտեսականների, ՄՏԿ-ների և սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների ԴԻՄՈՒՄԸ, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 9-ի համարում։

Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 8-րդ համարում, էջ 58—59։

7. ՃԻՇՏ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԿԵՐՊՈՎ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Գյուղատնտեսության մեքենայացումը— ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 94—98։

ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, Հայպետհրատ, 1956, էջ 42—51։

Երկրի լավագույն ՄՏ կայանների հիանալի օրինակը, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 7-րդ համարում։





### *8. ԱՆԸՆԴՀԱՏ ԸՆԴԼԱՅՆՎՈՒՄ ԵՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ ՄՅՈՒՍ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԵՏ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ .

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան Կենտրոնական ստադիոնում, *տպագրված, «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 1-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության նախագահ Կ. Ե. Վորոշիլովի ժամանումը Ֆինլանդիա, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 22-ի, 24-ի և 26-ի համարներում։*

Սովետա-ինդոնեզական համատեղ հայտարարություն, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 12-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Բ. ԲՅՈՍՆ— «Բնագետի պատմածները»։ Գինը 2 ռ. 10 կ., 160 էջ, տիրաժ 3.000։

Վ. ՌՇՏՈՒՆԻ— «Հայ հասարակական հոսանքների պատմությունից», 19-րդ դարի երկրորդ կես, հետռեֆորմյան շրջան։ Գինը 19 ռ. 70 կ., 560 էջ, տիրաժ 3.000։

«Սպորտային Հայաստան»։ Գինը 17 ռ., տիրաժ 3.000։

---

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 18 1956 г.

ՎՖ 05865 Պատվեր 760 Տիրաժ 8.440

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։